


Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Մեր սիրասուն հայրենիքի վրա ծագեց նոր տարվա արևը։ 1964 թվականը մեծագույն հաջողություններով դիմավորեցին սովետական մարդիկ։ Անշեղորեն ընթանալով լենինյան ուղիով, նրանք ուժ և եռանդ խնայեցին պատվով կատարելու պարտիայի XXII համագումարի որոշումները, ՍՄԿՊ ծրագիրը։ Անցած տարին իրավամբ համարվում է սովետական ժողովրդի և եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդների փառահեղ մեծագործությունների տարի։ Հիանալի է ասված ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՌՄ Մինիստրների սովետի «Նոր տարվա շնորհավորանքի» մեջ, որ «Մեր ապրած տարին պսակում է մեր երկրի կյանքի մեծ տասնամյակը։ Մեր հայրենիքի ժողովուրդները դուրս եկան կոմունիստական արշավի նոր բնագծեր»։ Մեզանից յուրաքանչյուրը հրճվանքի խոր զգացումով է ընդունում ընկ. Ն. Ս. Խրուշչովի խորիմաստ խոսքերը կոմունիստական պարտիայի փառապանծ գործերի մասին։ «Մեր պարտիան,— ասում է նա,— անշեղորեն ղեկավարվում է լենինյան այն ցուցումներով, որ ռևոլյուցիայի հաղթանակից հետո տնտեսական շինարարությունը, էկոնոմիկան կոմունիզմի պայքարի գլխավոր ասպարեզն են։ Հենց այդ է հաստատում այն փաստը, որ վերջին տասը տարում Սովետական Միության արդյունաբերության համա-

խառն արտադրանքը աճել է 2,7 անգամ։ Գրեթե երկու անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Արդյունաբերական արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը կազմել են 10,5 տոկոս։ Կառուցվել են ժամանակակից տեխնիկայով զինված 8.500 նոր, խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Խոպան հողերի յուրացման, բերքատվության բարձրացման, անասնապահության մթերատվության աճի շնորհիվ զգալիորեն ավելացել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու պետական գնումները։ Անցյալ տարի, չնայած խիստ ձմռանը և դաժան երաշտին, գնվել է 1,4 անգամ շատ հացահատիկ, 2,6 անգամ շատ միս, 2,7 անգամ շատ կաթ, 2,5 անգամ շատ բանջարեղեն, քան 1953 թվականին։ Անցյալ տարի Սովետական Միությունում հավաքվեց 5 միլիոն 200 հազար տոննա բամբակ. դա սովետական բամբակագործության ամբողջ պատմության մեջ ամենաբարձր բերքն է։

Անցած տասնամյակի ընթացքում հանրային արտադրության արագ աճը ապահովեց ազգային եկամտի ավելացում 2,3 անգամ և մեկ աշխատողի հաշվով աշխատավորների ռեալ եկամուտների ավելացում 61 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում հսկայական թափ ստացավ բնակարանային շինարարությունը։ Նոր տներ փոխադրվեցին և իրենց բնակարանային պայմանները բարելավեցին 108 միլիոն մարդ՝ երկրի բնակչության գրեթե կեսը։

Անձնվեր աշխատանք է կատարված յոթնամյա պլանը իրականացնելու համար։ Բոլոր տվյալները հաստատում են, որ յոթնամյա պլանը ժամկետից շուտ կկատարվի և սոցիալիստական էկոնոմիկան կբարձրանա նոր աստիճանի։ Անցած հինգ տարում համախառն արտադրանքի աճը կոնտրոլ թվերով նախատեսված 51 տոկոսի դիմաց կազմում է ավելի քան 58 տոկոս։ Մեծ բերկրանք է պատճառում բոլորին այն փաստը, որ ամբողջ քաղաքներ ու մարզեր արդեն հասել են յոթնամյակի վերջին տարվա համար սահմանված արտադրության մակարդակին։ Նրանց առջևից են ընթանում մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի, ինչպես նաև Լենինգրադի արդյունաբերության աշխատողները։ Ուկրաինայի արդյունաբերության աշխատողները արդյունաբերական արտադրանքի կարևորա-





գույն տեսակների թողարկմամբ հասել են 1965 թվականի արտադրության մակարդակին։

Նոր տարին վիթխարի հաջողություններով են դիմավորում հատկապես քիմիական արդյունաբերության աշխատողները։ Հինգ տարում ծանր ինդուստրիայի այդ ճյուղում կապիտալ ներդրումների ծավալը հասել է 5,3 միլիարդ ռուբլու, որը գրեթե 1,5 անգամ շատ է, քան քիմիայի զարգացման ասպարեզում ներդրվել է սովետական իշխանության նախորդ քառասուն տարիներին։ Այդ նույն ժամանակաշրջանում շարք են մտել 35 գործարաններ և ավելի քան 250 խոշոր քիմիական արտադրություններ։

1964 թվականը նոր և նշանակալից հաջողություններով դիմավորեցին նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ 1963 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը աճեց 10 տոկոսով, իսկ տարեկան պլանը կատարվեց 102 տոկոսով։ Ուրախալի է իմանալ, որ անցյալ տարի, 1958 թվականի համեմատությամբ, Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառըն արտադրանքը աճեց 67,6 տոկոսով՝ կոնտրոլ թվերով նախատեսված 64,6 տոկոսի դիմաց։ 1963 թվականին գերազանց աշխատանքով աչքի ընկան քիմիական արդյունաբերության, մեքենաշինության, շինանյութերի արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի աշխատողները։ Նրանք գերակատարեցին նախատեսված արտադրության մակարդակը։

Ռեսպուբլիկայում գերակատարված են 1963 թվականի աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները։ Միայն անցյալ տարվա 11 ամսում աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել է 103,2 տոկոսով, 10 ամսում ստացվել է 12 միլիոն ռուբլու արտապլանային շահույթ։

Մեր ռեսպուբլիկայում հինգ տարվա ընթացքում համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կազմեց 10,9 տոկոս, նախատեսված 10,5 տոկոսի փոխարեն։ Նույն ժամանակամիջոցում կառուցվել և գործարկվել են 150 ձեռնարկություն ու խոշոր գործամաս, շահագործման են հանձնվել 3,5 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ։

Արագ տեմպերով մեր ռեսպուբլիկայում զարգանում է քիմիական արդյունաբերությունը։ Նրա արտադրողականությունը հինգ տարում աճել է ավելի քան երկու ան-

գամ, յուրացվել է սինթետիկ կաուչուկի նոր տեսակների արտադրությունը, կազմակերպված է քիմիական շատ արժեքավոր բազմաթիվ նյութերի արտադրությունը, որի համար առաջ օգտագործվում էր սննդամթերք։ Զգալիորեն ավելացել է վինիլացետատի, կաուչուկի և հանքային պարարտանյութերի արտադրությունը։

Յոթնամյակի անցած տարիներին որոշակի հաջողությունների հասան նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ 1958 թվականի համեմատությամբ ընդարձակվեցին ցանքային տարածությունները, ավելացավ անասունների գլխաքանակը, բարձրացավ կոլտնտեսությունների և սովխոզների տեխնիկական հագեցվածությունը, 17 տոկոսով ընդլայնվեցին ոռոգվող հողերի, 48 տոկոսով՝ խաղողի այգիների և 26 տոկոսով՝ պտղատու այգիների տարածությունները։ 1963 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը երկու անգամ ավելի շատ հացահատիկ վաճառեցին, քան 1958 թվականին։

Նոր տարին աշխատանքային նոր հաջողություններով դիմավորեցին Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Նրանք ժամկետից 10 օր շուտ կատարեցին համախառն արտադրանքի և կարևորագույն շատ ապրանքների թողարկման տարեկան պլանը։ Ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին Երևանի ձեռնարկությունները երկրին տվել են ավելի քան վեց միլիոն ռուբլու խնայողություն, գերակատարված է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները հիացմունք են պատճառում սովետական մարդկանց և աշխատանքային նոր սխրագործությունների մղում նրանց։ Առաջիկայում այդ հաջողությունները կլինեն ավելի շատ և ավելի հզոր, որովհետև մեր մեծ երկրի աշխատավորները անշեղորեն կենսագործում են ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները, որոնք իրավամբ համարվում են մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման վառ օրինակ։ Դեկտեմբերյան պլենումի որոշումները ամենայն պարզությամբ ցույց են տալիս, թե մեր պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն ինչպես հաստատակամորեն ու հետևողականորեն կենսագործում են պարտիայի XXII համագումարի վերցրած կուրսը, նրա ընդունած ՍՄԿԿ



ծրագիրը։ Այդ պատմական որոշումները, որտեղ նախանշված են Սովետական Միության ժողովրդական տնտեսության քիմիացման կոնկրետ խնդիրները, բացառիկ կարևոր նշանակություն ունեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Այժմ բոլորին հայտնի է, որ միայն քիմիական արդյունաբերության բուռն զարգացումը կարող է ապահովել գյուղատնտեսության արտադրության արագ վերելքը և ժողովրդի բարեկեցության բարձրացումը։

«Քիմիական արդյունաբերությունը... այն բանալին է,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— որը մեր առջև բացում է նյութական բարիքների առատության դռները»։

Հաշվումները ցույց են տալիս, որ յոթ տարվա ընթացքում քիմիայի զարգացման բոլոր ծախսումները ոչ միայն հատուցվում են, այլև երկրին տալու են 15 միլիարդ ռուբլու շահույթ։ Քիմիական արդյունաբերությունը հնարավորություն կընձեռի երկրի ժողովրդական տնտեսությունն ապահովելու այնպիսի կատարյալ նյութերով, որոնք կփոխարինեն մետաղներին, գյուղատնտեսական այլ հումքի, կհագեցնեն արդյունաբերության և տրանսպորտի ամենատարբեր ճյուղերը որակապես նոր, ավելի կատարյալ նյութերով։

Ամենայն ճշտությամբ պարզաբանված է, որ քիմիական արդյունաբերությունը, գյուղատնտեսությանը տալով անհրաժեշտ հանքային պարարտանյութեր և վնասատուներից բույսերի պաշտպանության միջոցներ, դրանով իսկ կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ և երկրում կստեղծի բարձր ու կայուն բերք ստանալու, ինչպես նաև անասնապահության արտադրանքի անշեղ աճի հաստատուն երաշխիք։ Դրա շնորհիվ մեր երկիրը մոտ ապագայում կունենա այնքան գյուղատնտեսական արտադրանք, որքան անհրաժեշտ կլինի երկրի պահանջմունքները լրիվ բավարարելու համար։

Ամեն ինչ մարդու բարօրության համար, ամեն ինչ հանուն մարդու։ Ահա կոմունիզմի այն վսեմ գաղափարը, որով տոգորված են պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները։

Ի պատասխան սովետական մարդկանց բարօրության համար հարազատ կոմունիստական պարտիայի ջերմ հոգատարության, այս օրերին միլիոնավոր աշխատավորներ ձգտում են նոր տարին նշանավորել նոր հաջողություններով, հանուն կոմունիզմի հաղթանակի աշխատել է՛լ ավելի լավ, է՛լ ավելի անձնվիրաբար։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՔԻՄԻԱԿԱՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Քիմիական արդյունաբերության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության վերջերս ձեռնարկած միջոցառումները Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի № 3—5 ցեխում աշխատանքային մեծ խանդավառություն են առաջացրել։*

*ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի նյութերը ունկնդիրներին ծանոթացնելու նպատակով ագիտատոր Լ. Պողոսյանը ամոնիակային սիլիտրայի ու Թույլ ազոտաթթվի բաժանմունքներում հաճախակի ունկընդիրների հետ զրույցներ է ունենում քիմիական պարարտանյութերի արտադրությունն ավելացնելու մասին։ Ահա նրա զրույցներից մեկը, որ նա ունեցավ վերջերս։*

*— Գյուղատնտեսության պահանջները բավարարելու համար,— ասաց նա,— պլենումը խնդիր է դնում մոտակա տարիներին մեր երկրում շեշտակիորեն ավելացնել քիմիական պարարտանյութերի արտադրությունը։ Արդեն գալիք տարի պետք է հանքային պարարտանյութերի արտադրությունը հասցնել 24 միլիոն տոննայի, իսկ 1965 թվականին՝ 35 միլիոն տոննայի։ Քիմիան նպաստում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի արագ ստեղծմանը, սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։*

*Հակիրճ նախաբանից հետո ագիտատորը ունկընդիրներին ոչ միայն պարզաբանում է նրանց առաջնահերթ խնդիրները, այլև պատմում այն մասին, թե ինչ է արվում կոմբինատում ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները կենսագործելու, երկրին ավելի շատ քիմիական պարարտանյութեր տալու համար։*

*— Նախ,— շարունակում է նա,— մեր կոմբինատի կոլեկտիվը պատվով դուրս եկավ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի պատվին ծավալված սոցմրցությունից և 1963 թվականի տարեկան պլանը կատարեց ժամկետից 15 օր շուտ, ապա խելացիորեն օգտագործելով ներքին ռեզերվները, մեծ չափով ավելացրեց արտադրանքի թողարկումը։ Օրինակ, դեկտեմբերի կեսերից մինչև տարվա վերջը, աշխատելով յոթնամյակի 6-րդ տարվա հաշվին, քիմիագործները պլանից դուրս թողարկել են հարյուր հազարավոր ռուբլու արտապլանային արտադրանք։ Տարին լավ փակեց նաև № 3—5 ցեխի կոլեկտիվը, որը 1963 թվականի վերջին եռամսյակի ընթացքում պլանից դուրս տվեց մի քանի հարյուր տոննա ամոնիակային սիլիտրա։ Միայն դեկտեմբերի վերջին 2 շաբաթվա ընթացքում ցեխի կոլեկտիվը իր պարտավորություններից ավելի է արտադրել 120 տոննա պարարտանյութ։*

*Այնուհետև ագիտատորը խոսում է արտադրության առաջավորների մասին, նշում նրանց լավ աշխատանքը։*

*— Սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով է կատարում Թույլ ազոտաթթվի բաժանմունքի ապարատավար, Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Պ. Սամվելյանը։ Միայն 1963 թվականի վերջին 3—3,5 ամսում նա պլանից դուրս երկրին տվել է հարյուրավոր տոննա ազոտաթթու։ Բարձր արտադրողականությամբ է աշխատում նաև ապարատավար Վ. Աբրահամյանը, որը նույն ժամանակամիջոցում պլանից դուրս արտադրել է 75—80 տոննա ազոտաթթու, իսկ ամոնիակային սիլիտրայի բաժանմունքի ապարատավար Վ. Ղազարյանը առաջադրանքը գերակատարել է 120—130 տոննայով։*

*Այս օրերին իրենց արտադրական պլանը մինչև 6 տոկոսով գերակատարում են ապարատավարներ Ց. Հակոբյանը, Գ. Ռամազյանը, Ս. Սարդարյանը և շատ ուրիշներ։ Լավագույն արդյունքների է հասել Ս. Բաղդասարյանի հերթափոխությունը, որի միայն արտապլանային արտադրանքը կազմում է 200 տոննա։ Նոր եռանդով է աշխատում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի մասնակից, ապարատավար Խ. Ազարյանը։*

*Ջերմորեն արձագանքելով ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներին, իրենց խոստումը պատվով են կատարում Վ. Պետրովի կոմերիտական-երիտասարդական հերթափոխության աշխատողները, որոնք պլենումի օրերին պարտավորվել էին յուրաքանչյուր ամիս արտապլանային կարգով հայրենիքին տալ 50 տոննայից ոչ պակաս ազոտային պարարտանյութ։ Միայն առաջին հերթափոխությունների ընթացքում Վ.*

Պետրովի հերթափոխությունը արտապլանային կարգով տվեց 23 տոննա պարարտանյութ։ Հերթափոխության անդամները միահամուռ որոշել են պարարտանյութերով բեռնված կոմերիտական էշելոններ կազմել և երկաթուղային հանգույցի աշխատողներին կոչ են արել կանաչ ճանապարհ բացել իրենց համար։

Զրույցի ընթացքում ագիտատորը մեծ ուշադրություն դարձրեց ռացիոնալիզատորական շարժման վրա։ Ագրեգատների կատարելագործման, նրանց ծառայության ժամկետի երկարացման, արտադրողականության բարձրացման ու բանվորների աշխատանքային պայմանների բարելավման գործում շնորհալի աշխատանք են կատարում ցեխի ռացիոնալիզատորները։ Ագիտատորը հիշատակում է, որ կոմբինատում լավագույն ռացիոնալիզատորների համբավ են ձեռք բերել № 3—5 ցեխի մեխանիկ Վ. Տատարինովը, նորոգողների բրիգադիր Պ. Էլիբեկյանը, ապարատավարներ Վ. Ղազարյանը, Ց. Հակոբյանը, մեխանիկական ծառայության վարպետ Գ. Առաքելյանը, զոդող Ս. Պետրոսյանը և շատ ուրիշներ։

Միայն մեխանիկ Վ. Տատարինովը կատարել է մոտ 10 նորարարական առաջարկություն։ Վերջերս նա ձեռնամուխ է եղել շոգեմշակման ապարատների կատարելագործման աշխատանքներին։ Երեք ապարատներից մեկը արդեն կատարելագործվել է, որը հնարավորություն է տվել ավելացնել ամոնիակային սելիտրայի բաժանմունքի արտադրողականությունը, բարելավել արտադրանքի որակը։ Բրիգադիր Պ. Էլիբեկյանի առաջարկությամբ արմատավորվում է գրտնակների օգտագործման մեթոդը, որը կբարձրացնի ապարատների արտադրողականությունը, կբարելավի արտադրանքի որակը։ Վարպետ Գ. Առաքելյանի և զոդող Ս. Պետրոսյանի առաջարկությունների կիրառումը կբարելավի բանվորների աշխատանքային պայմանները, կնպաստի նրանց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

— Այն փաստը,— ասում է ագիտատորը,— որ այժմ, իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, № 3—5 ցեխի կոլեկտիվը ամենօրյա առաջադրանքները գերակատարում է մոտ 6 տոկոսով, դա ինքնըստինքյան խոսում է լրացուցիչ ռեզերվների հաջող օգտագործման մասին։ Թույլ աղոտաթթվի բաժանմունքում դրվել է երկու սառնարան, իսկ երկրորդը դրվելու է 1963 թվականի առաջին եռամսյակում։ Արդեն մոնտաժվել է ուտիլացման կաթսան։ Պարարտանյութերի չորացման բաժանմունքում սարքավորվում են հզոր օդափոխիչներ արտադրանքի չորացումն արագացնելու համար։ Թույլ աղոտաթթվի բաժանմունքում դրվելու է ռեզերվային այնպիսի ապարատ, որը հնարավորություն կտա 0,5—1 տոկոսով բարձրացնելու ցեխի արտադրողականությունը, այսինքն՝ երկրին տալ մի քանի տասնյակ տոննա լրացուցիչ պարարտանյութ։ Դա թույլ կտա նաև առանց ագրեգատների բեռնվածության պակասեցման կոնտակտային բաժանմունքում նորոգումներ կատարել։

Մոտ օրերս կավարտվի ուլտրաձայն գեներատորի մոնտաժումը, որը հնարավորություն կտա բարձրացնելու ցեխի կարողությունը և արտադրական պրոցեսը կատարելու ավելի բարենպաստ պայմաններում։

Կոմունիստական աշխատանքի ցեխի պատվավոր կոչման արժանանալու համար է պայքարում № 3—5 ցեխի ողջ կոլեկտիվը, որի նպատակն է՝ ավելի շատ պարարտանյութ տալ երկրին, նպաստել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։

Ագիտատորը հիացմունքով է խոսում Վ. Պետրովի երիտասարդական հերթափոխության մասին, որը պայքարում է կոմունիստական բարձր կոչմանն արժանանալու համար։

Այնուհետև ագիտատորը խոսեց կոմբինատի զարգացման հեռանկարների մասին։ Նա ունկնդիրներին պատմեց կարբամիդի և ամոնիակի նոր ցեխերի արտադրական հսկա կորպուսների կառուցման աշխատանքների մասին, որոնց թողարկումով մի քանի անգամ կավելանա պարարտանյութերի քանակը։ Նա ունկնդիրներին պատմեց նաև այն մասին, որ իրենց ձեռնարկության արտադրանքը ուղարկվում է հարյուրավոր հասցեներով։ Մեր պատվիրատուներն են ո՛չ միայն Սովետական Հայաստանի, այլև Վրաստանի, Ադրբեջանի, ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Թուրքմենիայի, Ուզբեկստանի, Տաջիկստանի, Լիտվայի, Լատվիայի ու այլ եղբայրական ռեսպուբլիկաների հարյուրավոր արդյունաբերական, շինարարական ու գյուղատնտեսական հիմնարկներ,— ասաց նա։ Կիրովականի քիմկոմբինատի արտադրանքը արտահանվում է արտասահմանյան 15 երկրներ, այդ թվում՝ Կորեա, Մալի,

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա, Գվինեա, Իրաք, Ինդոնեզիա, Թուրքիա, Եմեն, Սոմալի, Սուդան, Պակիստան, Աֆղանստան, Հաբեշստան, Կուբա, Ֆինլանդիա, Իրան։

Ագիտատոր Լ. Պողոսյանը զրույցի վերջում խոսեց ցեխի աշխատանքներում եղած թերությունների մասին։ Նա ասաց, որ ցեխում լրիվ չեն օգտագործվում բոլոր հնարավորությունները, երբեմն ծրարման , բեռնման ժամանակ թույլ են տրվում պատրաստի արտադրանքի կորուստներ։

Ագիտատորի զրույցից հետո ունկնդիրներից շատերը արտահայտվեցին ։ Ավագ ապարատավար Լ. Նազլուխանյանը, փականագործ Ս. Քալաշյանը խոսեցին ջրի ջերմաստիճանի անկանոնության մասին, իսկ՝ ապարատավար Մ. Սահակյանը՝ գոլորշու անբավարար մատակարարման մասին։

Ագիտացիոն զրույցին մասնակցում էր նաև № 3—5 ցեխի պետ ընկ. Կուրմաշովը, որը խոստացավ լուծել ագիտատորի և ունկնդիրների կողմից առաջ քաշված հարցերը։

Կիրովականի քիմկոմբինատի բոլոր աշխատողները համակված են մեկ ձգտմամբ՝ պատվով կատարել մեր պարտիայի առաջադրանքները, գյուղատնտեսությանը տալ ավելի շատ քիմիական պարարտանյութեր և դրանով իրենց ավանդը ներդնել գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու մեծ ու պատվավոր գործում։

Ա. ԾԱՏՈՒՐՅԱՆ



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁԱՎ ԱՌԱՋԱՎՈՐ

Առաջիկա երկու տարում առաջավորների մակարդակին հասցնել ետ մնացող բոլոր կոլտնտեսությունները և սովխոզները,— այսպիսի խնդիր է դրել մեր պարտիան գյուղատնտեսության աշխատողների առջև։ Այդ խնդրի կենսագործման համար են պայքարում պարտիական կազմակերպությունները գյուղում, այդ է գյուղական ագիտատորների զրույցների գլխավոր թեման։

Մի ժամանակ ետ մնացողների թվումն էր նաև Էջմիածնի արտադրական վարչության Վերին Քյոլանլուի գյուղի կոլտնտեսությունը։ Ստորև տպագրված հոդվածում ագիտատորները կտեսնեն, թե այդ տնտեսությունը ինչպես վերացրեց իր ետ մնալը և դարձավ առաջավոր։

1955 թվականին, երբ երեսունհազարական, գյուղատնտես, կոմունիստ ընկ. Խաչիկ Սիմոնյանին կոլտնտեսականներն ընտրեցին իրենց վարչության նախագահ, կոլտնտեսության արտադրությունը դեռևս ետ էր մնում, իսկ դրա պատճառը անբավարար, վատ ղեկավարությունն էր։ Կարճ ժամանակում նա կարողացավ ճիշտ կազմակերպել աշխատանքը կոլտնտեսությունում։ Կոլտնտեսականները սիրեցին ջանադիր, ազնվորեն աշխատող նորընտիր նախագահին, պաշտպանեցին նրա բոլոր նախաձեռնությունները։ Այս ամենը ցույց տանք փաստերի շարադրումով։

Վերին Քյոլանլու գյուղի կոլտնտեսությունը մեծ չէ, այն ընդգրկում է 250 ընտանիք, ունի մոտ 420 հեկտար օգտագործելի հողատարածություն, մշակում է բամբակ, խաղող, հացահատիկ, բանջարեղեն, կերաբույսեր։ Տնտեսությունն ունի նաև կաթնապրանքային, ոչխարաբուծական, խոզաբուծական, թռչնաբուծական ֆերմաներ, զբաղվում է շերամապահությամբ։

Չնայած եղած մեծ հնարավորություններին, մինչև 1955 թվականը այս բազմաճյուղ տնտեսության եկամուտները 150 հազար ռուբլուց չէին անցնում։ Ցածր

էին մշակվող կուլտուրաների բերքատվությունը, անասնաբուծության մթերատվությունը։ 1955 թվականին, օրինակ, բամբակի բերքատվությունը հեկտարից կազմեց 17 ցենտներ, խաղողինը՝ 71, բանջարեղենինը՝ 128, մեկ կովի կաթնատվությունը՝ 730 կիլոգրամ, յուրաքանչյուր հավից ստացվեց 18 ձու։

Աշխատասեր և գործիմաց նորընտիր նախագահը հեշտությամբ պարզեց այդ ամենի գլխավոր պատճառը։ Ահա այն՝ մարդիկ կորցրել էին հավատը գործի հաջողության, տնտեսությունը բարձրացնելու նկատմամբ։ Ինչքան ուզում ես աշխատիր, ասում էին նրանք, միևնույն է, բան չի ստացվի։ Իսկ ինչո՞ւ էին այդպես մտածում։ Որովհետև գործը, մարդկանց աշխատանքը կազմակերպող չկար։ Տարիներ շարունակ բրիգադիրների, ֆերմաների վարիչների պոստերը գրավել էին անգործունյա մարդիկ, իսկ հաճախակի փոխվող նախագահներն էլ հաշտվել էին նրանց հետ, վճռական միջոցների չէին դիմել ղեկավար աշխատանքում գործիմաց, ազնիվ աշխատողների առաջ քաշելու համար։ Եվ ահա մարդիկ աշխատում էին, բայց իրենց աշխատանքի պտուղը չէին տեսնում։ Այդ պատճառով էլ ընկել էր աշխատանքային կարգապահությունը, կոլտնտեսականների մի զգալի մասը խուսափում էր աշխատանքից։

Կոլտնտեսության նոր նախագահի առաջին անելիքը եղավ մարդկանց հավատ ներշնչել, որ լավագույն աշխատանքով կարելի է հարստացնել տնտեսությունը, լավ եկամուտներ ստանալ, որ իրենց ապրուստի գլխավոր աղբյուրը կոլտնտեսության ունեցվածքն է, որ իրենց վաստակածը ոչ ոք չի հափշտակի։ Ընտանիք չըմնաց, ուր նա չայցելեր, մտերմական, սրտաբաց զրույցներ չունենար մարդկանց հետ։ Սիմոնյանը խուսափում էր ընդհանուր, վերացական դատողություններ անելուց։ Նա նախ լսում էր մարդկանց խոսքը, նրանց կարծիքը գործն ավելի լավ կազմակերպելու մասին, իսկ հետո փաստերով, հաշվարկումներով նրանց համոզում, թե ինչպիսի ռեզերվներ ունի իրենց կոլտնտեսությունը, ինչպես կարելի է դրանք օգտագործել և ինչի կարելի է հասնել։

Սիմոնյանը չշտապեց ղեկավար աշխատողներին փոխելու հարցը կոլտնտեսության վարչության քննության դնել։ Նա այդ արեց նրանցից յուրաքանչյուրի գործնական հատկություններին, վարքագծին լավ ծա-



նոթանալուց հետո միայն։ Բնորոշ է հետևյալ դեպքը։

— Մի անգամ ինձ հայտնեցին,— պատմում է Սիմոնյանը,— որ բրիգադիրներից մեկը ամեն օր, աշխատանքից հետո, դույլով խաղող է տանում իր տուն։ Անձամբ ստուգեցի և տեսա, որ ճիշտ է։ Կարելի էր այդ բրիգադիրին անմիջապես հեռացնել պաշտոնից, իհարկե, բայց դա անհրաժեշտ դաստիարակչական նշանակություն չէր ունենա։ Պարտկազմակերպության քարտուղարի հետ խորհրդակցելով, հավաքեցինք բոլոր բրիգադիրներին ու ֆերմաների վարիչներին և նրանց քննությանը դրեցինք այդ հարցը։ Զանցանք կատարած բրիգադիրը գլուխը կախ էր գցել, կարմրել, ոչինչ չէր կարողանում ասել։ Սակայն մեր գլխավոր նպատակն այլ էր։ Եկեք հաշիվ անենք, ասում եմ ես, տեսնենք թե այգեքաղի ընթացքում ամեն օր մեկ դույլ խաղող տանելով՝ քանի՞ կիլոգրամ խաղողի տեր կլինես։ Այսքան ու այսքան, չէ՞։ Իսկ եթե լավ կազմակերպես բրիգադիդ աշխատանքը, և, ասենք, կրկնապատկես բերքատվությունը, այն ժամանակ որքա՞ն կլինի քո հասանելիքը։ Հաշվեցինք, և կրկնակի անգամ ավելի ստացվեց, քան կտաներ դույլերով։ Իսկ եթե բերքատվությունը եռապատկվի՞, նորից ենք հարցնում, չէ՞ որ դա հնարավոր է։ Հաշվում ենք-պարզվում է, որ այդ դեպքում բրիգադիրը քառակի անգամ ավելի կստանա, քան կարող էր տանել դույլերով։ Հիմա ո՞րն է լավը, ազնիվ աշխատանքով վաստակա՞ծը, փառքն ու պատի՞վը, թե՞ ամեն օր աշխատանքից հետո գաղտագողի տուն գնալը։

Մենք գիտեինք, որ այս զրույցի մասին կիմանա ամբողջ գյուղը, և այդ էր մեր նպատակը։ Այդ բրիգադիրին հետո հեռացրեցինք պաշտոնից, իհարկե, բայց նրա կողմից այլևս նման բան չնկատվեց, մարդը դարձավ կոլտնտեսության լավագույն աշխատողներից մեկը։

Բացատրական, դաստիարակչական աշխատանքին զուգահեռ կիրառվում էին նաև կազմակերպական արմատական միջոցառումներ։ Ղեկավար աշխատանքում իրենց չարդարացնողները փոխարինվեցին գործիմաց, հեղինակություն վայելող աշխատողներով. դաշտավարական 4 բրիգադներից մեկը կրճատվեց (հետագայում, 1960 թվականին դրանք ավելի խոշորացվեցին, թողնըվեց 2 բրիգադ). յուրաքանչյուր բրիգադի հողատարածություն հատկացվեց մեկ ուղղությամբ, որպեսզի բրիգադիրը օրվա ընթացքում հեշտությամբ կարողանա ա-

մենուրեք լինել. սահմանվեց կատարված ամեն մի աշխատանք՝ բրիգադիրի, գյուղատնտեսի և կոլտնտեսության նախագահի կողմից ընդունելու որոշակի կարգ:

Դեպի լավը կատարվող տեղաշարժը նկատելի էր, չնայած այն տեղի էր ունենում դանդաղ: Նկատելի էր այն փոփոխությունը, որ տեղի էր ունենում կոլտնտեսականների մեջ՝ դեպի աշխատանքն ունեցած վերաբերմունքի նկատմամբ: Մարդիկ գնալով ավելի ու ավելի վստահությամբ էին լցվում տնտեսության վաղվա օրվա հանդեպ:

1955 թվականին տնտեսության եկամուտներն զգալիորեն ավելացան, իսկ հաջորդ՝ 1956 թվականին պատկերը բոլորովին փոխվեց: Կոլտնտեսությունում մարդիկ աշխատում էին ոգեշնչված, ձգտում ամեն գործ կատարել ժամանակին և որակով: Հենց այդ տարի էլ ակնհայտ, շոշափելի դարձավ հիմնական բեկումը. կոլտնտեսականների աշխօրերին կրկնակի չափով ավելի դրամ և մթերքներ բաշխվեցին, քան նախորդ տարում:

Սկսվեց վերելքը: Անցավ վեց տարի, և յուրաքանչյուր նոր տարում կոլտնտեսությունն ավելի շատ մթերքներ էր արտադրում, ավելի մեծ եկամուտ ստանում, քան նախորդ տարում: Ահա 1962 թվականի հիմնական ցուցանիշները. խաղողի միջին բերքը յուրաքանչյուր հեկտարից կազմեց 160 ցենտներ, բանջարեղենինը՝ 390, բամբակինը՝ 28 ցենտներ: 1955 թվականի համեմատությամբ կոլտնտեսությունում մսի արտադրությունն ավելացավ 3,3 անգամ, կաթինը՝ 3,5 անգամ, բրդինը՝ 2 անգամ, ձվինը՝ 80 անգամ: Կոլտնտեսության ընդհանուր, համախառն եկամուտը հասավ 557 հազար ռուբլու՝ 1955 թվականին եղած 150 հազարի դիմաց: Հետաքրքիր է նշել, որ 1962 թվականին կոլտնտեսությունը 150 հազար ռուբլի եկամուտ ստացավ միայն անասնաբուծությունից:

1963 թվականի կլիմայական պայմանները աննպաստ էին հատկապես այգեգործության և բամբակի մշակության համար: Սակայն, չնայած դրան, Վերին Քյոլանլու գյուղի կոլտնտեսությունը արտադրական վարչության տնտեսությունների մեջ ընթացավ առաջին շարքերում: Տնտեսության ընդհանուր եկամուտը կազմեց՝ 400 հազար ռուբլի:

Երբ Խ. Սիմոնյանին, լավագույն բրիգադավարներ Հ. Խաչատրյանին, Մ. Հարությունյանին և մյուսներին հարցնում ես, թե ի՞նչ միջոցներով այդպես բարձրաց-



րին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, պատասխանը մեկն է լինում՝ լավագույն մշակումների, առաջավոր ագրոտեխնիկայի կիրառումով: Դա հակիրճ, բայց ճիշտ պատասխան է: Հողերը նույնն են, մարդիկ նույնը: Փոխվել է դեպի աշխատանքը, դեպի հանրային ունեցվածքը եղած վերաբերմունքը: Սկսած 1957 թվականից, կոլտնտեսությունում սրա կամ նրա չաշխատելու մասին խոսելու այլևս կարիք չի լինում: Կոլտնտեսության ղեկավարները դժվարանում են հիշել, թե ով և ինչ աշխատանք է անորակ կատարել, կամ ագրոմիջոցառումը չի կիրառել:

Քյոլանլուցիները չբավարարվեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության շեշտակի բարձրացումով: Նրանք օգտագործելի դարձրին 80 հեկտար աղակալած հողեր, խոշոր չափերով ընդարձակեցին եգիպտացորենի, առվույտի ցանքատարածությունները, սկսեցին մշակել կերի ճակնդեղ, գետնախնձոր և այլ կերաբույսեր, այսպիսով, ստեղծվեց կերի կայուն բազա: 1963 թվականին, օրինակ, պատրաստվեց 1380 տոննա բարձրարժեք սիլոս՝ 1955 թվականին պատրաստված 70 տոննայի դիմաց: Այդ ժամանակամիջոցում ավելի քան 6 անգամ ավելացավ կերերի արտադրությունը:

Կերերի առատ պաշարներ ստեղծելու, կովերի ցեղայնությունը բարելավելու և խնամքը լավագույն ձևով կազմակերպելու շնորհիվ շեշտակիորեն բարձրացվեց նրանց մթերատվությունը՝ յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 1962 թվականին հասավ 2.360 կիլոգրամի՝ 1955 թվականի 730-ի դիմաց:

Երրորդ տարին է, ինչ կոլտնտեսությունը տարեկան 20—22 հազար հավի ճուտ է աճեցնում, յուրաքանչյուրի քաշը 3 ամսական հասակում հասցնելով 1—1,5 կիլոգրամի, այն վաճառում է պետությանը: Կոլտնտեսությունն ունի նաև հնդկահավերի օրինակելի ֆերմա, որն առաջինն է ռեսպուբլիկայում: Ներկայումս կոլտնտեսությունը տարեկան արտադրում է 300 ցենտներ միս՝ նախկինում արտադրած 1,5 ցենտների դիմաց, 380 հազար ձու, որը 100 անգամ ավելի է, քան արտադրվել է 1955 թվականին:

Եվ այսպես, մի ժամանակվա ետ մնացող կոլտնտեսությունն այժմ դարձել է առաջավոր, ռեսպուբլիկայի շատ ու շատ տնտեսություններից այստեղ են գալիս

վերին քյոլանլուցիների փորձն ուսումնասիրելու, այն իրենց մոտ կիրառելու համար։

Այդպիսին է Վերին Քյոլանլու գյուղի կոլտնտեսությունն այսօր։ Իսկ ահա թե այն ինչպիսի զարգացում կունենա առաջիկայում։ Կոլտնտեսությունը նախատեսել է 1970 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, խաղողի արտադրությունն ավելացնել 240 տոկոսով, պտուղներինը՝ 130 անգամ, բանջարեղենինը՝ 90 տոկոսով, բոստանային կուլտուրաներինը՝ 60, կաթինը՝ 150, մսինը՝ 10, ձվինը՝ 460, բոլոր տեսակի կերերի համախառն արտադրությունը՝ 310 տոկոսով։

Այս կանխատեսումների իրական լինելու մեջ կոլտնտեսությունում ոչ ոք չի կասկածում, որովհետև դրանք հիմնվում են ճշգրիտ հաշվարկումների վրա։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

---

## ՔԻՄԻԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

### Քիմիան գյուղատնտեսության մեջ

Ազոտային պարարտանյութերը *քիմիական միացություններ են, որոնք պարունակում են բույսերի համար մատչելի ազոտ։ Չնայած օդի մեջ ազոտ շատ կա, բույսերն այն չեն կարողանում յուրացնել։ Մեզ մոտ օգտագործվում են ամոնիակի սելիտրա (որի մեջ կա 32—35 տոկոս ազոտ), ամոնիակի սուլֆատ (20—21 տոկոս ազոտ), միզանյութ (46 տոկոս ազոտ), կալցիումի ցիանամիդ (17—19 տոկոս ազոտ), ամոնիակաջուր (16—20 տոկոս ազոտ), ամիակատներ՝ միզանյութ, ամոնիակի կամ կալցիումի սելիտրայի խառնուրդ հեղուկ ամոնիակի հետ (28—40 տոկոս ազոտ)։*

*Բոլոր ազոտային պարարտանյութերն ստացվում են քիմիական գործարաններում, սինթեզի միջոցով։*

Ֆոսֆորային պարարտանյութերը *բույսերի համար մատչելի ֆոսֆոր պարունակող միացություններ են։ Մեզ մոտ օգտագործվում են սուպերֆոսֆատ (որի մեջ կա 19 տոկոս ֆոսֆորի օքսիդ), կրկնակի (խտացված) սուպերֆոսֆատ (45—50 տոկոս ֆոսֆորի օքսիդ), պրեցիպիտատ (30—40 տոկոս ֆոսֆորի օքսիդ), սուպերֆոսֆատի հետ ֆոսֆորիտային փոշու զանազան միացություններ, ֆտորազերծված ֆոսֆատ, թոմասխարամ, ֆոսֆատախարամ և մարտենյան այլ խարամներ։ Ֆոսֆորային պարարտանյութերն արտադրվում են քիմիական գործարաններում, բնական հանածոներից՝ ապատիտից և ֆոսֆորիտից։*



# ՔԻՄԻԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽԹԱՆՆ Է

(Թվեր և փաստեր)

Գյուղատնտեսության մեջ քիմիական նյութերի օգտագործումը առաջացրեց մեծ հեղաշրջում։ Քիմիական պարարտանյութերի սիստեմատիկ և խելացի օգտագործման դեպքում կարելի է ապահովել հացահատիկային կուլտուրաների կայուն, երաշխավորված բարձր բերք, որը կախված չի լինի բնության քմահաճույքներից։

Ահա թե ինչու պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը մեծ ուշադրություն դարձրեց գյուղատնտեսության քիմիացման հարցին։

Հարգելի ագիտատոր, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի նյութերը մասսայականացնելիս կարող ես օգտագործել հետևյալ թվերն ու փաստերը.

✪ Յոթ *տարում քիմիական ինդուստրիայի զարգացման և ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի քիմիացման համար ներդրվելու է* 42 միլիարդ *ռուբլի։*

✪ *1963 թվականին գյուղատնտեսությունն ստացավ* 15,9 միլիոն *տոննա պարարտանյութ, իսկ 1964 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան* 22 միլիոն *տոննա հանքային պարարտանյութ։*

✪ *Շնորհիվ քիմիական արդյունաբերության զարգացման, քիմիական նոր գործարանների կառուցման և հների ընդարձակման, պարարտանյութերի արտադրությունը 1953 թվականի* 7 միլիոն *տոննայի փոխարեն ընթացիկ տարում հասավ* 20 միլիոն *տոննայի։*

✪ *1964 թվականին միայն հացահատիկային կուլտուրաների համար կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան* 10 միլիոն *տոննա պարարտանյութ, որից* 7 միլիոն *տոննան միայն 1964 թվականի բերքի համար։ Այդ* 7 միլիոն *տոննա պարարտանյութը կտա լրացուցիչ* 14—20 *միլիոն տոննա, կամ* 850 միլիոնից մինչև 1 միլիարդ 200 միլիոն *փութ հացահատիկ։*

✪ Մեկ *տոննա հանքային պարարտանյութը տալիս է* 2—3 տոննա *հացահատիկի հավելում։*

✪ *1962 թվականին ՍՍՌՄ-ում մեկ հեկտար վարելահողին տրվել է* 62 կիլոգրամ *ստանդարտ հանքային պարարտանյութ, իսկ բերքատվությունը եղել է* 10,9 ցենտներ։ *ԱՄՆ-ում տրվել է* 229 կիլոգրամ, *իսկ բերքատվությունը՝ 26,6 ցենտներ, Անգլիայում՝* 766 կիլոգրամ, *իսկ բերքատվությունը* 35,8 ցենտներ, ԳԴՌ-*ում՝* 715 կիլոգրամ, *իսկ բերքատվությունը՝* 26,3 ցենտներ *և այլն*

✪ Մոտակա տարիներին հացահատիկային կուլտուրաների մեկ
հեկտարի բերքատվությունը 5—7 ցենտներով բարձրացնելու հա-
մար անհրաժեշտ է աշնանացան հացահատիկին տալ 4—5 ցենտներ
հանքային պարարտանյութ, գարնանացանին՝ 1,5—2 ցենտներ, հա-
տիկալոբազգի կուլտուրաներին՝ 1,5—2 ցենտներ, հատիկացու եգիպ-
տացորենին՝ 6—7 ցենտներ, շաքարի ճակնդեղի մեկ հեկտարին՝ 10
ցենտներ, բամբակենուն՝ 11 ցենտներ:

✪ 1970 թվականին նախատեսված քանակությամբ հացահա-
տիկ և այլ մթերքներ ստանալու համար անհրաժեշտ է 70—80 մի-
լիոն տոննա հանքային պարարտանյութ։

✪ Այդ քանակի պարարտանյութ ստանալու համար անհրա-
ժեշտ է եղած գործարանների կարողությունը մեծացնել մոտավո-
րապես 20 միլիոն տոննայով և կառուցել ևս 55 գործարան, ընդ
որում՝ ազոտային պարարտանյութերի 28, ֆոսֆատային պարարտա-
նյութերի 19 գործարան, կալիումի 6 հանքարան և ֆոսֆորալյուրի
արտադրության 2 ձեռնարկություն։ Այդ կառուցումների համար ան-
հրաժեշտ է ներդնել 4,5 միլիարդ ռուբլի։

✪ Քիմիայի մեջ կապիտալ ներդրումները արագ փոխհատուց-
վում են։ Հացահատիկային կուլտուրաներին 30—35 միլիոն տոն-
նա հանքային պարարտանյութ տալու դեպքում. լրացուցիչ կստաց-
վի 3 միլիարդ փութ հացահատիկ։ Այդ քանակի պարարտանյութ
արտադրելու համար պահանջվում է 2 միլիարդ ռուբլի կապիտալ
ներդրում՝ գործարաններ կառուցելու համար։ Պետությունը 3 մի-
լիարդ փութ հացահատիկի իրացումից կստանա 2 միլիարդ ռուբլի,
որը և կծածկի գործարանների կառուցման վրա կատարված ծախ-
սերը։

✪ Ջիթատու կուլտուրաների համամիութենական գիտահետա-
զոտական ինստիտուտը հեկտարին 3 ցենտներ պարարտանյութ
տալու դեպքում ստացել է 15 ցենտներ հացահատիկի հավելում։

✪ Հայտնի է, որ մեկ ցենտներ բորակը 25—30 ցենտներով ա-
վելացնում է շաքարի ճակնդեղի բերքը, իսկ հողը պարարտացնելու
դեպքում կստացվի 100 ցենտներ ճակնդեղ։ Լրացուցիչ 100 ցենտներ
ճակնդեղը նշանակում է հեկտարից ստանալ 13 ցենտներ շաքար։
3,3 միլիոն հեկտար ցանքատարածության դեպքում երկիրը կստանա
լրացուցիչ 4 միլիոն 300 հազար տոննա շաքար։ Դա նշանակում է, որ
պետության ընդհանուր շահույթը կկազմի 2 միլիարդ 380 միլիոն
ռուբլի։

✪ Եթե ՍՍՌՄ-ում 1963 թվականին արտադրվել է 20 միլիոն
տոննա հանքային պարարտանյութ, ապա 1964 թվականին արտա-
դրվելու է 25 միլիոն 500 հազար տոննա, 1969 թվականին՝ 64 մի-
լիոն 700 հազար, իսկ 1970 թվականին՝ 80 միլիոն տոննա: Ընդ
որում այդ նույն ժամանակամիջոցում արտադրվելու է ազոտային



պարարտանյութ՝ 8 միլիոն 551 հազար տոննա, 1964 թվականին՝
10 միլիոն 200 հազար տոննա, 1969 թվականին՝ 25 միլիոն 800
հազար, 1970 թվականին՝ 30 միլիոն 200 հազար տոննա, ֆոսֆա-
տային պարարտանյութ 1963 թվականին՝ 5 միլիոն 821 հազար տոն-
նա, 1964 թվականին՝ 7 միլիոն 440 հազար, 1969 թվականին՝ 20
միլիոն 600 հազար, 1970 թվականին 26 միլիոն 700 հազար տոն-
նա, կալիական պարարտանյութ 1963 թվականին՝ 3 միլիոն 338 հա-
զար տոննա, 1964 թվականին՝ 4 միլիոն 520 հազար, 1969 թվա-
կանին՝ 11 միլիոն 250 հազար, 1970 թվականին՝ 15 միլիոն 500
հազար տոննա և այլն։ 1980 թվականին նախատեսվում է արտա-
դրել 150—170 միլիոն տոննա պարարտանյութ։

✪ Անհրաժեշտ քանակի հանքային պարարտանյութեր ստանա-
լու համար հարկավոր է մինչև 1970 թվականը ավելացնել հետևյալ
հանքանյութերի արտադրությունը. ֆոսֆոր պարունակող հանքա-
նյութինը 20 միլիոն տոննայից հասցնել 60 միլիոնի, կալիումական
աղերինը՝ 12 միլիոն տոննայից՝ 50 միլիոն տոննայի, ծծումբ պա-
րունակող հանքանյութինը՝ 5 միլիոն տոննայից՝ 20 միլիոն տոն-
նայի։

✪ Բույսերը վնասատուներից, մոլախոտերից և հիվանդու-
թյուններից պաշտպանելու համար անհրաժեշտ է ավելացնել նաև
հերբիցիդների և թունաքիմիկատների արտադրությունը։ Մինչև
1970 թվականը նախատեսվում է արտադրել բույսերի պաշտպանու-
թյան մոտավորապես 800 հազար տոննա քիմիական միջոցներ
(հերբիցիդներ)։

✪ Անասնապահության սուր պրոբլեմը, դա անասուններին սպի-
տակուցներով ապահովելն է, որի պակասի դեպքում նվազում է
նրանց մթերատվությունը և դանդաղում աճը։ Այդ պակասը
կարելի է լրացնել անասնակերին սինթետիկ պրեպարատներ ավե-
լացնելով, որոնցից օրգանիզմը սպիտակուցներ է մշակում, կամ կե-
րաբաժնին քիմիական ու բիոքիմիական պրեպարատներ ավելաց-
նելով, որը բարելավում է անասունների կողմից կոշտ սպիտա-
կուցային կերի յուրացումը։

✪ 1970 թվականին մոտավոր հաշվումներով անասնապա-
հության համար անհրաժեշտ է կերի խմորիչ՝ 2 միլիոն տոննա,
կոնսերվատ՝ 780 հազար՝ տոննա, միկրոտարր՝ 4.200 տոննա, սին-
թետիկ ամինաթթու՝ 11.500 տոննա, վիտամիններ՝ 1.300 տոննա,
կերի հակաբիոտիկ՝ 500 տոննա և այլն։

✪ 1964 թվականից մինչև 1970 թվականը ժողովրդական տըն-
տեսության տարբեր ճյուղերում քիմիական նյութերի կիրառման
շնորհիվ միայն արտադրանքի ինքնարժեքի իջեցումից կստացվի 32
միլիարդ 700 միլիոն ռուբլի գումարի տնտեսում։

---

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի անբաժանելի մասն է կազմում Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան՝ Գերմանիայի պատմության մեջ առաջին բանվորա-գյուղացիական պետությունը, որը ծնունդ է առել 1949 թվականի հոկտեմբերի 7-ին։

ԳԴՌ-ն ժողովրդական իշխանության 14 տարիների ընթացքում իր մարտական ավանգարդի՝ Գերմանիայի միացյալ սոցիալիստական պարտիայի ղեկավարությամբ, նոր կյանքի շինարարության գործում հասավ մեծ հաղթանակների։ Ներկայումս Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան աշխարհի և Եվրոպայի ամենախոշոր ինդուստրիալ պետություններից մեկն է հանդիսանում։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունները հաղթանակել են երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

□ *1963 ԹՎԱԿԱՆԻՆ ԳԴՌ-ի տերիտորիայում, որը կազմում է նախկին գերմանական ռեյխի տարածության մոտավորապես 1/4-ը, արտադրվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան թողարկել է 1936 թվականին ամբողջ Գերմանիան։*

□ *1962 ԹՎԱԿԱՆԻՆ ԳԴՌ-ի արդյունաբերական արտադրանքը, 1950 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 3 անգամ։ Հետաքրքրական է այն փաստը, որ արդյունաբերական արտադրանքի 88 տոկոսը թողարկում են սոցիալիստական ձեռնարկությունները, իսկ միայն 9 տոկոսը՝ կիսապետական ձեռնարկությունները։*

□ *ԳԴՌ-ն արդյունաբերական արտադրանքի ծավալի տեսակետից այժմ գտնվում է աշխարհի տասը առավել զարգացած երկրների շարքում։*

□ *ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ գյուղատնտեսության մեջ մեկ հեկտար օգտագործելի տարածությունից ստացված բերքի տեսակետից ԳԴՌ-ն Եվրոպայում գրավում է 5-րդ տեղը և առաջ է անցել այնպիսի զարգացած գյուղատնտեսական երկրներից, ինչպիսիք են՝ Դանիան, Հոլանդիան, Բելգիան և Արևմտյան Գերմանիան։*

□ *1962 ԹՎԱԿԱՆԻՆ սոցիալիստական գյուղատնտեսության ձեռնարկությունները (ժողովրդական կալվածքները, գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվները) մշակել են երկրի հողատարածությունների 93,2 տոկոսը։ ԳԴՌ-ում կազմակերպվել են 16.640 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։*



□ *ԳԵՐՄԱՆԱԿԱՆ Դեմոկրատական Ռեսպուբլիկայում այժմ կառուցվում է առաջին ատոմային էլեկտրակայանը Սովետական Միության անմիջական օգնությամբ։*

□ *1956 ԹՎԱԿԱՆԻՑ մինչև 1962 թվականը աշխատավորների ռեալ եկամուտները աճել են 20,2 տոկոսով։*

□ *ԳԵՐՄԱՆԱԿԱՆ Դեմոկրատական Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման 1964—1970 թվականների հեռանկարային պլանի համաձայն արդյունաբերության ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, կաճի 60 տոկոսով։ Այդ 6 անգամ ավելի է 1949 թվականի արդյունաբերական արտադրանքի մակարդակից։ 1963 թվականի համեմատությամբ ազգային եկամուտը կաճի 35 տոկոսով։*

□ *1970 ԹՎԱԿԱՆԻՆ քիմիական արդյունաբերության արտադրանքը, 1963 թվականի համեմատությամբ, կաճի 83 տոկոսով։*

□ *ԱՅԺՄ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում գործում են տասնամյա հանրակրթական-պոլիտեխնիկական միջնակարգ դպրոցներ, որտեղ սովորում են բոլոր դպրոցականների 77 տոկոսը։*

## ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Ծաղկման ու զարգացման ուղիով է ընթանում Ռումինիայի ժողովրդական Ռեսպուբլիկան։

□ *ԱՅԺՄ Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան 47 օրվա ընթացքում թողարկում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրվել է ամբողջ 1948 թվականի ընթացքում։*

□ *1960 ԹՎԱԿԱՆԻ սկզբից ռեսպուբլիկայում շարք են մտել և սարքավորվել են ժամանակակից նոր տեխնիկայով հագեցված 160-ից ավելի ձեռնարկություններ և ցեխեր։*

□ *ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ Ռումինիայի խոշորագույն ձեռնարկություններից Ռեշիցկի մետալուրգիական կոմբինատը թողարկում է երկրում արտադրվող չուգունի և պողպատի մոտավորապես մեկ երրորդ մասը։*

□ *1938 ԹՎԱԿԱՆԻ համեմատությամբ, Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում մեքենաշինական արտադրանքի թողարկումը այժմ ավելացել է 15 անգամ, քիմիական արդյունաբերության արտադրությունը՝ մոտ 18 անգամ, սև մետալուրգիայինը՝ 9 անգամ՝ էլեկտրաէներգիայի մշակումը՝ 15 անգամ։*

□ *ԵԹԵ բուրժուա-կալվածատիրական ռեժիմի օրոք Ռումինիան ամբողջ էլեկտրաապարատուրան ներմուծում էր արտասահմանից, ապա այժմ երկրում ստեղծվել է հզոր էլեկտրաարդյունաբերություն*

և էլեկտրասարքավորում է արտահանվում մոտ 20 երկրներ։

□ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ Ռումինիան վերամշակում է այնքան ցեմենտ, որքան Նորվեգիան, Ֆինլանդիան, Հունաստանը և Թուրքիան միասին վերցրած։ Ռումինական ցեմենտը լավ հայտնի է Սովետական Միությունում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ինդոնեզիայում, Սուդանում և շատ ուրիշ երկրներում։

□ 1938 ԹՎԱԿԱՆԻ համեմատությամբ, 1961 թվականին, Ռումինիայում պարարտանյութերի արտադրանքը աճել է 470 անգամ, թունավոր քիմիկատների արտադրությունը՝ 234 անգամ։

□ 1962 ԹՎԱԿԱՆԻՆ աշխատավորների ռեալ աշխատավարձը 1950 թվականի համեմատությամբ, բարձրացել է մոտ երկու անգամ։

□ ՌՈՒՄԻՆԻԱՅՈՒՄ հետպատերազմյան տարիներին կառուցվել է մոտ 2 միլիոն նոր բնակարան։

□ ԱՅԺՄ Ռումինիայում յուրաքանչյուր 700 բնակչին ընկնում է մեկ բժիշկ։ Ռումինիայի միայն սև ծովյան ափերին գտնվող հանգստյան տներում տեղերի թիվը ավելացել է 5.400-ով։

□ ՎԵՑԱՄՅԱԿԻ 3-րդ տարում ՌԺՌ-ում ռադիո-ընդունիչների արտադրությունը աճել է 4,5 անգամ, լվացքի մեքենաներինը՝ 2,5 անգամ, իսկ սառնարաններինը՝ 12 անգամ։

□ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ իշխանության տարիներին երկրում իրականացվեց կուլտուրական ռևոլյուցիա։ Անցյալի ամոթալի ժառանգությունը՝ անգրագիտությունը համարյա ամբողջապես լիկվիդացված է։

□ ՄՈՏ 100 հազար մարդ սովորում է ժողովրդական Ռումինիայի բարձրագույն ուսումնական հաստատությունների ցերեկային երեկոյան բաժիններում։

□ ՄԻԱՅՆ Բուխարեստում հաշվվում է մոտ 1.600 գրադարան։ Դրանցից ամենախոշորներն են Ռումինիայի ժողովրդական Ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիայի գրադարանը և պետական կենտրոնական գրադարանը։

□ ՌՈՒՄԻՆԻԱՅԻ շատ քաղաքներում բացվել են ժողարվեստական դպրոցներ։ 50 այդպիսի դպրոցներում 12 հազար տաղանդավոր երիտասարդներ հանրակրթական առարկաներին զուգահեռ, սովորում են երաժշտություն, կերպարվեստ և այլն։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Պարտիայի պլանները ժողովրդի պլաններն են

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է, զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 9-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ— Ճառ ՍՄԿԿ դեկտեմբերյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։

Խաղաղ, ստեղծարար աշխատանքի պլաններ, «Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 20-ի համարում։

## 2. Սովետական Հայաստանը մեծ քիմիայի ռեսպուբլիկա է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ— Ճառ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։

Ա. ՔՈՉԻՆՅԱՆ— Ճառ ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 19-ի համարում։

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Ճառ ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 19-ի համարում։

## 3. Անթերի կատարենք ստանձնած պարտավորությունները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 13-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 15-ի համարում։*

Առանձին ռեկորդներից դեպի մասսայական ռեկորդներ, *Նյութեր եղբայրական Վրաստանի Մախարաձեի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության պարտիական կոմիտեի գործունեության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 7-ի համարում։*

Փոխանակում են աշխատանքի փորձը, *Նյութեր Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 21-ի համարում։*

Հենվելով ակտիվի վրա, *Նյութեր եղբայրական Ադրբեջանի Դաշքեսանի արդյունաբերական-արտադրական պարտիական կոմիտեի աշխատանքի փորձի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 27-ի համարում։*

## 4. Սովետական Հայաստանի էկոնոմիկայի ու կուլտուրայի նոր վերելքի համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների պետական պլանի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիայում 1963 թվականի դեկտեմբերի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

Ա. ՇԵԿՈՅԱՆ— Հայկական ՍՍՌ 1964—1965 թվականների պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1962 թվականի պետական բյուջեի կատարման մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիայում 1963 թվականի դեկտեմբերի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիայի նյութերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 29-ի համարում։*

---

Խմբագիր Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# АГИТАТОРИ БЛОКНОТ

**№ 1**

**1964**

ՎՖ 02469 Պատվեր 1149 Տիրաժ 9467

Հանձնված է արտադրության 2/I 1964 թ.
Ստորագրված է տպագրության 10/I 1964 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։